## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ
## ԶԱՏԿՈՒԱՅ ԱՐԱՐՈՂՈՒԹԵԱՆՑ

### Ս. ՅՈՎՀ. ՄԿՐՏԻՉ

Աւագ Հինգշաբթի, *յիշատակ ընթրեաց Ս. պատարագ ժամը 10ին, կարգ Ոտն-լուայի երեկոյեան ժամը չորսին; Խաւարման պաշտամունք ժամը ութին :*

Աւագ Ուրբաթ.— *Յիշատակ Չարչարանաց եւ Խաչելութեան, կարգ Թաղման, Թափօր երեկոյեան ժամը հինգին :*

Աւագ Շաբաթ.— *Ճրագալոյց Ս. Զատկի, երեկոյեան ժամը 3.30ին, Ս. պատարագ ժամը հինգին :*

Կիրակի, Ս. Զատիկ.— *Տօն Յարութեան, սկիզբ ժամերգութեան ժամը 7.30ին, հանդիսաւոր քառաձայն Ս. պատարագ ժամը 10ին: Պիտի պատարագէ եւ քարոզէ Գեր. Տէր Սերովբէ Եպիսկ. Մանուկեան :*

Երկուշաբթի Բ. օր Ս. Զատկի.— *Յիշատակ Մեռելոց, պատարագ ժամը 10ին, յաւարտ պատարագի հոգեհանգիստ ընդհ. ննջեցելոց :*

### ՎԱՐԱԳԱՅ Ս. ԽԱՉ – ԱՌՆՈՒՎԻԼ

Աւագ Հինգշաբթի.— *ժամը 10.30ին Ս. պատարագ, երեկոյեան ժամը վեցին Ոտնլուայի արարողութիւն :*

*Նոյն իրկունը Աւագ Ուրբաթի գիշերային պաշտամունք, ժամը ութին, Յիշատակ Չարչարանաց, Խաչելութեան եւ Թաղման :*

Աւագ Շաբաթ.— *Ճրագալոյց ժամը վեցին, ընթերցմունք Խթման երեկոյեան գիրքերու եւ Ս. պատարագ ժամը 7ին:*

Կիրակի, Զատիկ.— *Ս. պատարագ ժամը 10.30ին :*

ԲՇ.— *Յիշատակ Մեռելոց, յաւարտ Ս. պատարագի ընդհ. ննջեցելոց հոգեհանգիստ: Նոյն օրը Աւետումն Ս. Աստուածածնի :*

### ՇԱԻԻԼ

Աւագ Հինգշաբթի.— *երեկոյեան Ոտնլուայի արարողութիւն ժամը 16ին, Խաւարում ժամը քսանին:*

Աւագ Ուրբաթ.— *Թաղում երեկոյեան 17ին :*

Աւագ Շաբաթ.— *Խթման օր, երեկոյեան Ս. պատարագ ժամը 16ին:*

×

### ՄԱՐՍԷՅԼ, ՄԱՅՐ – ԵԿԵՂԵՑԻ

Աւագ Հինգշաբթի.— *Առաւօտ Նախատօնակ ժամը 8.30ին, Ս. պատարագ 10ին, երեկոյ Ոտնլուայ ժամը 5ին, Խաւարում ժամը 7.30ին:*

Աւագ Ուրբաթ.— *Յիշատակ Խաչելութեան առաւօտ ժամը 10ին, երեկոյ Թաղում ժամը հինգին :*

Աւագ Շաբաթ.— *Ճրագալոյց Ս. Զատկի, առաւօտ ժամը 8.30ին, Ս. Հաղորդութիւն տալոց 9.30ին, Ս. պատարագ Խթումի, երկսեռ խումբով ժամը 5.30ին:*

Կիրակի, Ս. Զատիկ, *Յարութիւն Տեառն, առաւօտ Նախատօնակ եւ Անդաստան ժամը 7.30ին, Ս. պատարագ ժամը 10ին:*

Երկուշաբթի, *Մեռելոց.— առաւօտ ժամը ութին, Ս. պատարագ 10ին, Հոգեհանգիստ ժամը 11.45ին:*

Նոր Կիրակի, Ազգ. Մեծ Սգատօն.— *Յիշատակ բիւրաւոր նահատակացն մերոց, յընթանցս համաշխարհային պատերազմին: Առաւօտ Ս. Պատարագ Հոգեհանգիստ ժամը 8–11.30ին :*

### ՄԱՐՍԷՅԼ.— ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ

Աւագ Հինգշաբթի.— *Առաւօտ ժամերգութիւն եւ փոքրերու Հաղորդութիւն ժամը 9ին, Ոտնլուայ ժամը 5.30ին, Խաւարում ժամը ութին:*

Աւագ Ուրբաթ.— *Թաղում Տեառն, երեկոյեան ժամը վեցին :*

Աւագ Շաբաթ.— *Առաւօտ ժամը 9ին, Ճրագալոյց ժամը 5ին, Ընթերցմունք վեցին, Ս. պատարագ 7ին :*

Կիրակի, *Զատիկ Տօն Հրաշափառ Ս. Յարութեան :*

*Սկիզբ ժամերգութեան ժամը 7ին, Ս. Պատարագ տասնին, Քարոզ 11ին:*

### ԳԱՄՓ. ՖՐԷԶ

Աւագ Հինգշաբթի.— *Առաւօտ ժամը 9ին, Ս. պատարագ տասնին, Ոտնլուայ 16ին, Խաւարում 19ին:*

Աւագ Ուրբաթ.— *Առաւօտ Խաչելութեան ժամը 10ին, Թաղում ժամը 16ին:*

Աւագ Շաբաթ.— *Ճրագալոյց Ս. Զատկի, առաւօտ ժամը 9ին, երեկոյ ժամը 15.30ին, Ս. պատարագ ժամը 16.30ին :*

Կիրակի, Ս. Զատիկ.— *Առաւօտ ժամը 8.30ին, Ս. Պատարագ ժամը 10ին:*

Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

### ՊՈՄՈՆԻ Ս. Գ. ԼՈՒՍ. ԵԿԵՂԵՑԻ

Աւագ Հինգշաբթի.— *Առաւօտ ժամը 8ին, Ս. Պատարագ 10ին, Ս. Հաղորդութիւն կը մատակարարուի երկսեռ մանուկներու, Ոտնլուայ ժամը 5ին, Խաւարում ժամը ութին :*

Աւագ Ուրբաթ.— *Թաղում ժամը 5ին,*

Աւագ Շաբաթ, *Ճրագալոյց, երեկոյեան ժամը 4.30ին, Ս. Պատարագ 5.30ին, Նախատօնակ Զատկի 7ին:*

Կիրակի, Ս. Զատիկ.— *Առաւօտ ժամը 7.30ին, Ս. պատարագ 10ին:*

### ՊՈՒԼ-OSSO

Աւագ Հինգշաբթի.— *Առաւօտ ժամը 8ին, Ս. Պատարագ ժամը տասնին, Հաղորդութիւն բոլոր երկսեռ մանկանց, երեկոյ Ոտնլուայ ժամը հինգին, Խաւարում 7.30ին:*

Աւագ Ուրբաթ.— *Թաղում ժամը 5ին :*

Աւագ Շաբաթ.— *Ճրագալոյց Ս. Զատկի, երեկոյեան ժամը 4.30ին:*

Կիրակի, Ս. Զատիկ.— *Առաւօտ ժամը 7ին, Ս. պատարագ ժամը տասնին:*

Երկուշաբթի, Մեռելոց.— *Առաւօտ ժամը ութին, Ս. պատարագ տասնին, Հոգեհանգիստ ժամը 11ին:*

×

### ԼԻՈՆ

Աւագ Հինգշաբթի.— *Առաւօտ ժամը 9ին, Ս. Պատարագ 10ին, Ոտնլուայ ժամը չորսին, Խաւարում 7.30ին :*

Աւագ Ուրբաթ.— *Թաղում ժամը17.30ին :*

Աւագ Շաբաթ.— *Ճրագալոյց ժամը 4.30ին, Ս. պատարագ վեցին:*

Կիրակի, Ս. Զատիկ.— *Առաւօտ ժամը 7ին, Ս. Պատարագ ժամը 10ին:*

Երկուշաբթի, Մեռելոց.— *Առաւօտ ժամը 8.30ին, Հոգեհանգիստ 11ին, Գերեզմանօրհնէք կէսօրէ վերջ ժամը 2ին:*

×

### Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ – ՆԻՍ

Աւագ Հինգշաբթի.— *Առաւօտ Սկիզբ ժամերգութեան ժամը ութին, Ս. պատարագ ժամը 10ին, Երեկոյ Ոտնլուայ 4ին, Խաւարում ժամը 7.30ին:*

Աւագ Ուրբաթ.— *Առաւօտ Խաչելութիւն ժամը 9.30ին, Երեկոյ Թաղում 4ին:*

Աւագ Շաբաթ.— *Ճրագալոյց, առաւօտ ժամը 9ին, երեկոյ ժամը 3.30ին, Ս. Պատարագ 4.30ին:*

Կիրակի, Ս. Զատիկ.— *Առաւօտ սկիզբ ժամերգութեան ութին, Ս. պատարագ 10ին:*

Երկուշաբթի, Մեռելոց.— *Առաւօտ ժամը 8.30ին, Ս. Պատարագ 9.30ին:*

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

Աւագ հինգշաբթի.— *ժամը 10.30ին ժամերգութիւն : ժամը 15ին երեկոյեան ժամերգութիւն եւ Ոտլուայի արարողութիւն, ժամը 16.30ին հանդիսաւոր պատարագ, ժամը 19.30ին Խաւարման ժամերգութիւն:*

Աւագ Շաբաթ.— *ժամը 17ին ժամերգութիւն Զատկի Ճրագալոյցին, ժամը 18ին ձայնաւոր պատարագ եւ Նախատօնակ:*

ԶԱՏԻԿ.— *ժամը 9.30ին ժամերգութիւն, ժամը 10.30ին ձայնաւոր պատարագ եւ ընդհ. Հաղորդութիւն :*

### ՀՐԱՒԷՐ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

*Հայ Կարմիր Խաչի Օգնութեան մարմնին (Փարիզահայ Տիկնանց Միութիւն) ընդհ. ժողովը տեղի պիտի ունենայ Ուրբաթ, Ապրիլ 11, ժամը 17ին, իր կեդրոնատեղին,* 15 բիւ ժան Կուժօն, Փարիզ :

*Օրակարգ.— 1) Վարչութեան նիւթական եւ բարոյական հաշուետուութիւն : 2) Նոր վարչութեան ընտրութիւն : 3) Ընթացիկ հարցեր :*



### ՆՈՒԷՐՆԵՐ

*Անիէռէն Տէր եւ Տիկին Զրտաքեան Յաջողութիւն (Շապին Հարահիսարցի) իրենց ննջեցեալներուն յիշատակին, փոխան հոգեհանգիստի հետեւեալ նուէրները կ'ընեն — 8000 Ֆրանք Մշակոյթի Տան Շ.* Միսաքեան *սրահին, հինգ հազար Մոնմորանսիի հանգստեան տան, հինգ հազար Անտիյի հանգստեան տան, երկու հազար* Յառաջի *բաւզաւաճման համար: Հանգստեան տուներուն եւ Շ. Միսաքեան սրահին գումարները ստանալ* Յառաջէն:

### ՑՈՒՑԱՀԵՏՐ

*ՋՈՄի կեդր. Վարչութիւնը ստիպողական ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամները այս հինգշաբթի իրիկուն ժամը 21ին, սովորական հաւաքատեղին :*

Հայ Կարմիր խաչի օրը Մայիս 11ին, ժամը 14ին Սորպոնի ամփիթատրոնին մէջ :

*Սիրայօժար մասնակցութեամբ յայտնի արուեստագէտներու :*

*Մանրամասնութիւնները մօտ օրէն :*

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ
## ԶԱՏԿՈՒԱՆ ԱՐԱՐՈՂՈՒԹԵԱՆՑ

### ՎԱՐԱԳԱՑ Ս. ԽԱՉ, ԱՌՆՈՒՎԻԼ

Աւագ Շաբաթ.— Ճրագալոյց ժամը վեցին, ընթերցմունք Խթման երեկոյեան գիրքերու եւ Ս. պատարագ ժամը 7ին:

Կիրակի, Զատիկ.— Ս. պատարագ ժամը 10.30ին :

ԲՇ.— Յիշատակ Մեռելոց, յաւարտ Ս. պատարագի ընդհ. Ննջեցելոց հոգեհանգիստ: Նոյն օրը Աւետումն Ս. Աստուածածնի :

### ՇԱՒԻԼ

Աւագ Շաբաթ.— Խթման օր, երեկոյեան Ս. պատարագ ժամը 16ին:

×

### ՄԱՐՍԷՅԼ, ՄԱՅՐ – ԵԿԵՂԵՑԻ

Աւագ Շաբաթ.— Ճրագալոյց Ս. Զատկի, առաւօտ ժամը 8.30ին, Ս. Հաղորդութիւն տալոց 9.30ին, Ս. պատարագ Խթումի, երկսեռ խումբով ժամը 5.30ին:

Կիրակի, Ս. Զատիկ, Յարութիւն Տեառն, առաւօտ Նախատօնակ եւ Անդաստան ժամը 7.30ին, Ս. պատարագ ժամը 10ին:

Երկուշաբթի, Մեռելոց.— առաւօտ ժամը ութին, Ս. պատարագ 10ին, Հոգեհանգիստ ժամը 11.45ին:

Նոր Կիրակի, Ազգ. Մեծ Սգատօն.— Յիշատակ բիւրաւոր նահատակացն մերոց, յընթանցս համաշխարհային պատերազմին: Առաւօտ Ս. Պատարագ Հոգեհանգիստ ժամը 8–11.30ին :

### ՄԱՐՍԷՅԼ.— ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ

Աւագ Շաբաթ.— Առաւօտ ժամը 9ին, Ճրագալոյց ժամը 5ին, Ընթերցմունք վեցին, Ս. պատարագ 7ին :

Կիրակի, Զատիկ Տօն Հրաշափառ Ս. Յարութեան :

Սկիզբ ժամերգութեան ժամը 7ին, Ս. Պատարագ տասնին, Քարոզ 11ին:

### ԳԱՄՓ. ՖՐԷԶ

Աւագ Շաբաթ.— Ճրագալոյց Ս. Զատկի, առաւօտ ժամը 9ին, երեկոյ ժամը 15.30–ին, Ս. պատարագ ժամը 16.30ին :

Կիրակի, Ս. Զատիկ.— Առաւօտ ժամը 8.30ին, Ս. Պատարագ ժամը 10ին:

### ՊՈՄՈՆԻ Ս. Գ. ԼՈՒՍ. ԵԿԵՂԵՑԻ

Աւագ Շաբաթ, Ճրագալոյց, երեկոյեան ժամը 4.30ին, Ս. Պատարագ 5.30ին, Նախատօնակ Զատկի 7ին:

Կիրակի, Ս. Զատիկ.— Առաւօտ ժամը 7.30ին, Ս. պատարագ 10ին:

### ՊՈՒԼ. OSSO

Աւագ Շաբաթ.— Ճրագալոյց Ս. Զատկի, երեկոյեան ժամը 4.30ին:

Կիրակի, Ս. Զատիկ.— Առաւօտ ժամը 7ին, Ս. պատարագ ժամը տասնին:

Երկուշաբթի, Մեռելոց.—Առաւօտ ժամը ութին, Ս. պատարագ տասնին, Հոգեհանգիստ ժամը 11ին:

### ԼԻՈՆ

Աւագ Շաբաթ.— Ճրագալոյց ժամը 4.30ին, Ս. պատարագ վեցին:

Կիրակի, Ս. Զատիկ.— Առաւօտ ժամը 7ին, Ս. Պատարագ ժամը 10ին:

Երկուշաբթի, Մեռելոց.— Առաւօտ ժամը 8.30ին, Հոգեհանգիստ 11ին, Գերեզմանօրհնէք կէսօրէ վերջ ժամը 2ին:

### Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ – ՆԻՍ

Աւագ Շաբաթ.— Ճրագալոյց, առաւօտ ժամը 9ին, երեկոյ ժամը 3.30ին, Ս. Պատարագ 4.30ին:

Կիրակի, Ս. Զատիկ.— Առաւօտ սկիզբ ժամերգութեան ութին, Ս. պատարագ 10ին:

Երկուշաբթի, Մեռելոց.— Առաւօտ ժամը 8.30ին, Ս. Պատարագ 9.30ին:

### ՏԷՍԻՆ

Կրօն. Ընկերակցութիւնը, կը փութայ ծանուցանել Տէսինահայ յարգոյ հայ հասարակութեան թէ, այս Կիրակի առաւօտ ժամը 8.30ին, Զատկի առթիւ Ս. պատարագ պիտի մատուցուի տեղւոյս Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ:

### ՊԱՏԱՐԱԳ ԿՐԸՆՕՊԼԻ ՄԷՋ

Այս Երկուշաբթի առաւօտ Զատկուան առթիւ պատարագ պիտի մատուցուի, Րիւ Ժէ Սէն Լուի սրահին մէջ :

Պիտի պատարագէ Թորգոմ Քահանայ (Լիոն) :

### ՍԷՆ ԺԵՐՈՄ

Աւագա Շաբաթ.—Առաւօտ ժամը 8.30–ին, երեկոյ, ընթերցուածք ժամը 5.30ին, Պատարագ Խթումի 6.30ին:

Կիրակի, Զատիկ.— Առաւօտ ժամը 8.30ին, Պատարագ ժամը 10ին:

Երկուշաբթի, Մեռելոց.— Առաւօտ ժամը 8.30ին, Ս. պատարագ 10ին, Հոգեհանգիստ 11.45ին:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ.—

Թաթուլ խումբը այս Ուրբաթ, ժամը 9ին, սովորական հաւաքատեղին :

ՄՈՒՐԱՏ խումբը այս կիրակի ժամը 15.30ին:

ԱՐԱՄ խումբը, Երկուշաբթի ժամը 15.30ին:

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

Վարչութեան նորընտիր անդամները ժողովի կը հրաւիրուին Ապրիլ 9ին, Չորեքշաբթի, ժամը վեցուկէսին, սովորական հաւաքատեղին :





## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Վավա Խաչատուրեան կը ծանուցանէ թէ իր ողբ. ամուսնոյն,

**ՆԿԱՐԻՉ ՍԱՐԳԻՍ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆԻ**

մահուան տասնըմէկերորդ տարեդարձին առթիւ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Հայոց եկեղեցին, այս Երկուշաբթի : Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները եւ մասնաւորաբար Սանասարեանի սաները :

×

Այրի Տիկին Աչըքկէօզեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս երկուշաբթի առաւօտ յետ պատարագի (Մեռելոց) Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին իրենց ամուսնոյն եւ հօր՝

**ՀԱՅԿ ԱՉԸՔԿԷՕԶԵԱՆԻ**

մահուան տարելիցին առթիւ եւ Աչըքկէօզեան եւ Լէյլոզեան ննջեցելոց հոգւոյն ի յիշատակ :

×

Տէր եւ Տիկին Նուպար Աւագեան, Պ. Ժիրայր Աւագեան, Տէր եւ Տիկին Եթերեան, Տէր եւ Տիկին Մարանկոզեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս երկուշաբթի առաւօտ յետ պատարագի իրենց մօր եւ քրոջ՝

**ՄԱՆՆԻԿ ԱՒԱԳԵԱՆԻ**

մահուան քառասունքին առթիւ Լիոնի Ս. Աստուածածին եկեղեցին :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԳԻՆԵՋՕՆ
## Ի ՊԱՏԻՒ ԸՆԿ. Վ. ԻՇԽԱՆԵԱՆԻ՝
## ՄԱՐՍԷՅԼ

Այս Երկուշաբթի իրիկուն ժամը 21ին: Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Արամ խումբին եւ հովանաւորութեամբ Շրջ. կոմիտէին :

## ՆԿԱՏԻ ՌԻՆԵՆԻԱԼ

Վասպուրականի Հերոսամարտը Վիէնի մէջ, Ապրիլ 12ին Շաբաթ օր :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

Աւագ Շաբաթ.— ժամը 17ին ժամերգութիւն Զատկի Ճրագալոյցին, ժամը 18ին ձայնաւոր պատարագ եւ Նախատօնակ :

ԶԱՏԻԿ.— ժամը 9.30ին ժամերգութիւն, ժամը 10.30ին ձայնաւոր պատարագ եւ ընդհ. Հաղորդութիւն :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Մէթրօ Փորթ Մայեօ կամ Շամփէրէ

Զատկուան առթիւ պիտի խօսի վերապատուելի Սիսլեան : Այս կիրակի առաւօտ ժամը 10.45ին:

Նիւթ՝ ԽԱՉԱԿԻՐՆԵՐԸ :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

## ՀԱՒԿԹԱԽԱՂ՝ ՎԻԷՆ

Հայ Կամաւորներու եւ Մարտիկներու Միութեան հաւկթախաղ եւ խնջոյքը այս երկուշաբթի, կէսօրէն ետք ժամը 14.30ին Դաշնակցութեան ակումբը :


Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## «ՅԱՌԱՋ»Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

Շնորհակալութեամբ ստացանք Պ. Պ. Արղումանեանէ (Ալժէ) հինգ հազար ֆր. Շ. Միսաքեանի գործերուն հրատարակութեան առթիւ :

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Շաւիլի մասնաճիւղի ընկերուհիները կ'ողբան մահը ընկերուհի

ՆՈՒՐՀԱՆԻ ՏԷՄԻՐՃԵԱՆԻ

իրենց ցաւակցութիւնը կը յայտնեն հանգուցեալին պարագաներուն եւ փոխան ծաղկեպսակի տասը հազար ֆր. կը նուիրեն Կապ. Խաչի օգնութեան կայանին :

Նոյնպէս Կապ. Խաչի Շաւիլի ընկերուհիները ցաւակցութիւն կը յայտնեն ընկերուհի Արսինէ Մկրտիչեանին իր քրոջ այրի Տիկ. Նուրհանիի մահուան առթիւ :

Հ. Յ. Դ. Շաւիլի «Արղութեան» խումբի ընկերները ցաւակցութիւն կը յայտնեն ընկերներ Մովսէս եւ Յարութիւն Տէմիրճեաններու իրենց կնոջ եւ հարսին՝

ՆՈՒՐՀԱՆԻ ՏԷՄԻՐՃԵԱՆԻ

մահուան առթիւ եւ փոխան ծաղկեպսակի տասը հազար ֆր. կը նուիրեն Փարիզի Մշակոյթի տան «Շաւարշ Միսաքեան» սրահի շինութեան ֆոնտին :

(Ստանալ «Յառաջ»էն) :

Փարիզէն Տէր եւ Տիկին Թորոսեան, ողբացեալ Նուրհանի Տէմիրճեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի հինգ հազար ֆր. կը նուիրեն Կապ. Խաչի Շաւիլի մասնաճիւղին :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Յարութիւն Քիւփճեան, Տէր եւ Տիկին Ղազար Քիւփճեան, իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր անոնց որ իրենց ցաւակցութիւնները յայտնեցին իրենց ամուսնոյն եւ եղբօր

ՅԱՐՈՒԹԻՒՆ ՔԻՒՓՃԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ :

Այս տխուր առթիւ Տիկին Թագուհի Քիւփճեան կը նուիրէ հազար ֆրանք Հ. Յ. Դ. Վալանսի Շրջ. կոմիտէին եւ 500 ֆրանք «Յառաջ»ի բարգաւաճման համար :

×

Այրի Տիկին ՍԱՌԱՅ ՄԱՐԳԱՐԵԱՆ եւ զաւակները Գրիգոր, Խորէն եւ Սարգիս, ինչպէս նաեւ Մարգարեան, Դաւիթեան եւ Մօթիքեան ընտանիքները, իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն ամէն անոնց որոնք իրենց ցաւակցութիւնը յայտնեցին իրենց ողբացեալ ամուսնոյն, հօր, եղբօր, քեռայրին եւ ազգականին,

ԱՍԱՏՈՒՐ ՄԱՐԳԱՐԵԱՆԻ

յանկարծական մահուան առթիւ որ տեղի ունեցաւ Մարտ 24ին :

×

Փարիզի Ազք. Ընկերակցութիւնը շնորհակալութեամբ ստացած է զանազան առիթներով հետեւեալ նուէրները .—

(Դ. ՑԱՆԿ)

Պ. Լեւոն Մեսթճեան 1000 ֆրանք, Սիւրմէեան ընտանիք հազար, Պ. Հ. Թ. երկու հազար, Նիկողոսեան Նիկողոս հազար, Տիկ. Նիկողոսեան Հայկուհի հազար, Տէր եւ Տիկին Զատիկ Քօչեան երկու հազար, Պ. Ժիրայր Զիլինկիրեան հինգ հազար, Տօքթ. Զաքարեան Սերժ չորս հազար, Տիկ Զատիկեան հինգ հարիւր, Պ. Խորասան հազար, Ոմն հազար, Պ. Աւագեան Աշխէ 10.000, Տէր եւ Տիկին Գրիգոր Բամպուքճեան երկու հազար, Տիկին Մարիցա Տօնէլեան չորս հազար, Տիկիններ՝ Գարուեան, Շէրչեան, Ղուկասեան, Կլիւլեան եւ օրիորդներ Կիւլեան, Փափազեան (Ատիյի մէջ սպրքուած պատարագի մը առթիւ) 4800, Տէր եւ Տիկին Ժազօպեան, Պ. Պէնտէրճեան, Տիկին Գամպուրեան 500ական, Տէր եւ Տիկ. Զ. Մութաֆեան հազար, Տէր եւ Տիկին Ա. Պօղոսեան հազար, Տէր եւ Տիկին Օհանեան հինգ հազար, Տէր եւ Տիկին Փագոսեան հազար, Տէր եւ Տիկ. Զատրըճեան հազար, Տէր եւ Տիկին Աւետիսեան երկու հազար, Տիկին Մարիամ Վարդանեան հազար, Պ. Յ. Ալեանագեան 10.000, Կիւլպէնկեան ֆօնտ հարիւր հազար ֆր. (Կաղանդի առթիւ) : (Շար.)

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

Վարչութեան նորընտիր անդամները ժողովի կը հրաւիրուին Ապրիլ 9ին, Չորեքշաբթի, ժամը վեցուկէսին, սովորական հաւաքատեղին :

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ .—

ՄՈՒՐԱՏ խումբը այս կիրակի ժամը 15.30ին :

ԱՐԱՄ խումբը, Երկուշաբթի ժամը 15.30ին :

## ՆՈՒԷՐՆԵՐ

Տէր եւ Տիկին Հօթիկեան Ամերիկա իրենց մեկնումին առթիւ երկու հազար ֆրանք կը նուիրեն «Յառաջ»ի բարգաւաճման եւ հազար ֆրանք Մշակոյթի Տան : (Ստանալ «Յառաջ»էն) :

×

Տէր եւ Տիկին Քէշիշեան, իրենց թոռնիկին ծննդեան առթիւ կը նուիրեն երեք հազար ֆրանք Մշակոյթի Տան Շ. Միսաքեան սրահին (ստանալ «Յառաջ»էն), եւ երկու հազար ֆր. Կապոյտ Խաչի Անիէռի մասնաճիւղին :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Վալա Խաչատուրեան կը ծանուցանէ թէ իր ողբ. ամուսնոյն,

ՆԿԱՐԻՉ ՍԱՐԳԻՍ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆԻ

մահուան տասնըմէկերորդ տարեդարձին առթիւ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Հայոց եկեղեցին, այս Երկուշաբթի : Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները եւ մասնաւորաբար Սանասարեանի սաները :

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԳԻՆԵՋՕՆ Ի ՊԱՏԻՒ ԸՆԿ. Վ. ԻՇԽԱՆԵԱՆԻ՝ ՄԱՐՍԷՅԼ

Այս Երկուշաբթի իրիկուն ժամը 21ին : Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Արամ խումբին եւ հովանաւորութեամբ Շրջ. կոմիտէին :

## ՀԱՒԿԹԱԽԱՂ՝ ՎԻԷՆ

Հայ Կամաւորներու եւ Մարտիկներու Միութեան հաւկթախաղ եւ խնջոյքը այս երկուշաբթի, կէսօրէն ետք ժամը 14,30ին Դաշնակցութեան ակումբը :



Imprimé sur les presses du journal HARATCH

17, Rue Bleue, 17 — PARIS (9e)



## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

ԶԱՏԻԿ.— Ժամը 9.30ին ժամերգութիւն, ժամը 10.30ին ձայնաւոր պատարագ եւ ընդհ. Հաղորդութիւն :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Վասպուրականի Հերոսամարտը Վիէնի մէջ, Ապրիլ 12ին Շաբաթ օր :

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Մէթրօ Փորթ Մայեօ կամ Շամփէրէ

Զատկուան առթիւ պիտի խօսի վերապատուելի Սիսլեան : Այս կիրակի առաւօտ ժամը 10.45ին :

Նիւթ՝ ԽԱՉԱԿԻՐՆԵՐԸ :










## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Հ. Բ. Ը. Միութեան Եւրոպայի Կեդր. Յանձնաժողովը եւ Փարիզի մասնաճիւղի վարչութիւնը կը հաղորդեն թէ այս Կիրակի, յաւարտ Ս. պատարագի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ, Միութեան 52րդ տարեդարձին առթիւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Միութեան հիմնադիրներուն, բարերարներուն եւ համայն ննջեցեալ անդամներուն յիշատակին :*

*Կը խնդրուի Միութեան բոլոր բարեկամներէ եւ անդամներէ ներկայ ըլլալ յարգանքի այս արտայայտութեան :*

×

*Այրի Տիկին Շահխաթունի կը ծանուցանէ թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին այս կիրակի առաւօտ իր ողբացեալ ամուսնոյն*

**ԱՇՕ ՇԱՀԽԱԹՈՒՆԻԻ**

*մահուան տարելիցին առթիւ: Ողբացեալ արուեստագէտին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ ըլլալ :*

×

*Տէր եւ Տիկին Նազարէթեան եւ զաւակները, Արտաշէս, Սմբատ, Համբարձում, կը ծանուցանեն թէ , այս Կիրակի առաւօտ Սէնթ Անթուանի Ս. Թադէոս եկեղեցւոյ մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ողբացեալ կնոջ եւ հարսին՝ ԱՐԱՔՍԻ Տ. ՆԱԶԱՐԷԹԵԱՆԻ տարելիցի առթիւ: Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :*

×

*Պ. Մեսիկեան եւ Տիկինը (ծնեալ Ռեբեկա Ջալլաքեան) կը ծանուցանեն թէ այս կիրակի առաւօտ Մարսէյլի հայ կաթողիկէ եկեղեցիին մէջ (92 րիւ տ'Օպաներ) հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ծնողաց Տէր եւ Տիկին Ստեփան եւ Աղաւնի Ջալլաղեանի (նահատակուած 1915ին) մահուան տարեդարձին առթիւ:*

*Կը հրաւիրուին յիշատակը յարգողները:*

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Տէր եւ Տիկին Սթաթեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Գապաքճեան եւ զաւակները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով կամ կազմակերպութեանց նուէրներով ցաւակցութիւն յայտնեցին ողբացեալ ՄԱՐԻ ՍԹԱԹԵԱՆԻ մահուան առթիւ:*

*ՃՇԴՈՒՄ.— Շաբաթ օրուան թիւին մէջ նուէրներու կարգին Տէր եւ Տիկին Թորոսեան պիտի ըլլայ Տէր եւ Տիկին Թորանեան (5000 Ֆր. Կապ. Խաչի Շաւիլլ մասնաճիւղին ):*



### ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

*Կազմակերպուած Հայր. Առաքելական եկեղեցւոյ Փարիզի եւ շրջակայից Կրօն. Ընկերակցութեան վարչութեան կողմէ,* *այս Ուրբաթ ժամը* 8.30ին, Միւզէ Կիմէի *դասախօսութեանց սրահը*, 6 Փլաս տ'Իէնա, Փարիզ (16):

*Նախագահութեամբ Հայրապետական պատուիրակ՝ ՍԵՐՈՎԲԷ եպիսկ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ :*

*Ա.— Պիտի բանախօսէ Սըր ՍԻՏՆԷ ՔԷՅՆ տնօրէն Լոնտոնի համալսարանի քաղաքական տնտեսագիտութեան վարժարանի, որ պիտի տայ իր տպաւորութիւնները ուղեւորութեան մասին զոր կատարած է վերջերս դէպի Հայաստան - Էջմիածին Կիւլպէնկեան Հիմնադրամի Յանձնախումբին կողմէ:*

*Բ.— Պ. Խոսուար Իւթիւճեան ճարտարագէտ Տէ.Փէ.Էլ.Ժէ. պիտի մեկնաբանէ ժապաւէններ որոնք կը պարունակեն Հայաստանի տեսարաններ, հայկական եկեղեցիներ, մենաստաններ եւ վանքեր :*

*Կը հրաւիրուի հասարակութիւնը այս շահեկան հաւաքոյթին :*

Մուտքը ազատ է:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԼԻՈՆ.— Յ. Կ. Խաչի ընդհ. ժողովը այս Ուրբաթ ժամը երեքին Յոյներու սրահը, 5 րիւ Պոնըֆուա: Օրակարգ.— Վարչութեան ընտրութիւն, շրջաբերականի ընթերցում եւ ընթացիկ հարցեր :*

*ՀԱՄԱ - ԽԱՐԲԵՐԴ. Հայր. Միութեան Կարտանի մասնաճիւղի ընդհ. անդամական ժողովը այս Կիրակի կէսօրէ վերջ, ժամը երեքին Հ. Բ. Ը. Միութեան սրահին մէջ :*

### ԽՆՋՈՅՔ

*ՍԷՆ ԼՈՒ.— Հ. Յ. Դ. Ակնունի ենթակոմէին ընկերահամակրական խնջոյքը, այս Շաբաթ երեկոյ, տեղւոյս դպրոցին սրահին մէջ:*

*Գեղարուեստական ճոխ բաժին: Երգ, արտասանութիւն, հայկական պար եւ անակնկալներ :*

Մուտքը ազատ է :

*ԾԱՆՕԹ.— Նոյն օրը պիտի քաշուի Կապոյտ Խաչի Սէն Լուի գիշերային դպրոցի վիճակահանութեան տոմսերը :*

### ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

*Կազմակերպուած Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէի կողմէ :*

*Տեղի կ'ունենայ այս Շաբաթ, ժամը* 21ին, *Ֆրանս. Համալսարանի Ամփիթատրոնին մէջ :*

*Կը նախագահէ ընկեր ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ*

*Կը խօսի ընկեր Վ. ԻՇԽԱՆԵԱՆ*

*Նիւթ՝* Հայաստանի ժողովուրդը, մըտաւորականութիւնը եւ մենք :

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

### Ս. ՅՈՎՀ. ՄԿՐՏԻՉ ԵԿԵՂԵՑԻ

*Պիտի կատարուի հոգեհանգիստ մեր բիւրաւոր նահատակաց յիշատակին համար, այս կիրակի, պիտի մատուցուի հանդիսաւոր քառաձայն Ս. պատարագ :*

*Պիտի քարոզէ Հայրապետական Պատուիրակ՝ ԳԵՐՇ. ՏԷՐ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ:*

*Կը հրաւիրուի հասարակութիւնը այս հոգեհանգստեան պաշտամունքին մեծարելու համար յիշատակը մեր հերոսներուն եւ նահատակներուն :*

### ՎԱՐԱԳԱՅ Ս. ԽԱՉ

*ԿԻՐԱԿԻ՝. հոգեհանգստեան պաշտօն գիւղին մէջ երկար տարիներ հանրութեան ծառայած հանգուցեալ բժիշկ Յովհաննէս Արթինեանի յիշատակին :*

*Կը խնդրուի հանգուցեալին յիշատակը յարգողներէն իրենց ներկայութեամբը յարգել զայն :*

### Ս. ԹԱԴԷՈՍ — ՄԱՐՍԷՅԼ

*ՆՈՐ ԿԻՐԱԿԻ, տօն համայն նահատակաց, պատարագ ժամը 10ին, քարոզ 11ին եւ հոգեհանգստեան պաշտօն 11.30ին:*

### Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՊՈՄՈՆ

*ԿԻՐԱԿԻ, կրկնազատիկ, յիշատակ մէկ միլիոն նահատակաց : Պատարագ ժամը 10ին, հոգեհանգիստ 12ին :*

### Ս. ԿԱՐԱՊԵՏ - (ԳԱՄՓ. ՖՐԷԶ)

*ԿԻՐԱԿԻ, նահատակաց տօն, ժամը 9ին, պատարագ 10ին :*

(Կառտանի եկեղեցիին մէջ)

*Մասնաւոր հոգեհանգիստ ի յիշատակ Խրիմեան Հայրիկի վախճանման 50րդ տարելիցին առթիւ:*

### ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ ՎԻԷՆԻ ՄԷՋ

*Վիէնի Վասպ. Հայր. Միութիւնը կը տօնէ Վասպուրականի հերոսամարտի* 43րդ *տարեդարձը :*

*Կը ներկայացուի Շիրվանզադէի՝*

«ՊԱՏՈՒՈՅ ՀԱՄԱՐ»

*Այս Շաբաթ կէսօրէ վերջ ժամը 3ին, Սինեմա Նովէլթի մէջ, եւ կարճ ժապաւէններ :*

*Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:*

### ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ՅՈՒՇԱՄԱՏԵԱՆ ԲԱՐՁՐ ՀԱՅՔԻ

## ԿԱՐԻՆԱՊԱՏՈՒՄ

*Խմբագրութեամբ ՂԱԶԱՐ - ՉԱՐԸԳԻ,* 790 *մեծադիր էջերէ բաղկացած, պատկերազարդ եւ լաթակազմ հատոր մը: Գինը՝* 2500 *ֆրանք, ապահովագրուած ծրարի ծախք՝* 220 *ֆրանք աւելի:*

*Միակ կեդրոնատեղի՝ Գրատուն Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ,* 46 րիւ Ռիշէ, Փարիզ (9):

*Շատ քիչ օրինակներ մնացած են :*



### ԱՊՐԻԼԵԱՆ ՍԳԱՏՕՆ

*Փոն տը Շէրիւի եւ Շրջակայքի Հայ Ազգային Միութեան նախաձեռնութեամբ եւ մասնակցութեամբ Աւետարանական եւ Սթանոյի Հայր. Միութեան, տեղի պիտի ունենայ Ապրիլ 27ին, Գաթպիսոն Պ. Պապիկեանի սրահը :Մանրամասնութիւնը յաջորդով :*

×

*ՎԻԷՆԻ մէջ Ապրիլ 27ին :*





### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Հայաստանի ներքին Ախտայի Բգնի գիւղէն Սարգիս Անտոնեանը կը փնտռէ իր զաւակը ՀՐԱՅՐ ԱՆՏՈՆԵԱՆԸ, Բ. աշխարհամարտին գերի ինկած Գերմաններու քով: 1945ի սկիզբը կը գտնուէր Վիէննա հիւանդանոցի մէջ: Տեղեկութիւն ունեցողներէն թախանձագին կը խնդրուի յայտնել Ս. Յակոբեանի,* 2 րիւ Քոնտորսէ, Քաշան (Սէն), Ֆրանս :

*Ամերիկահայ թերթերէն կը խնդրուի արտատպել :*




Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## «ՅԱՌԱՋ» ԿԸ ՆՈՒԻՐԷՆ

Գ. Խաչերեան մէկ տարուան «Յառաջ» կը նուիրէ Գ. Դաւիթեանի (Պոլէն):

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Հ. Բ. Ը. Միութեան Եւրոպայի Կեդր. Յանձնաժողովը եւ Փարիզի մասնաճիւղի վարչութիւնը կը հաղորդեն թէ այս կիրակի, յաւարտ Ս. պատարագի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ, Միութեան 52րդ տարեդարձին առթիւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Միութեան հիմնադիրներուն, բարերարներուն եւ համայն ննջեցեալ անդամներուն յիշատակին:

Կը խնդրուի Միութեան բոլոր բարեկամներէ եւ անդամներէ ներկայ ըլլալ յարգանքի այս արտայայտութեան:

×

Այրի Տիկին Շահխաթունի կը ծանուցանէ թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին այս կիրակի առաւօտ իր ողբացեալ ամուսնոյն

ԱՇՕ ՇԱՀԽԱԹՈՒՆԻԻ

մահուան տարելիցին առթիւ: Ողբացեալ արուեստագէտին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ ըլլալ:

×

Այրի Տիկին Նուրհանի Խաչատուրեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի առաւօտ Ալֆորվիլի Ս. Պօղոս Պետրոս եկեղեցիին մէջ իրենց ամուսնոյն եւ հօր՝

ԳԷՈՐԳ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ: Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՍԷՆ ԺԵՐՈՄ.— Այրի Տիկին Նարկիզ Կիրակոսեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ՝ իրենց ամուսնոյն եւ հօր Յակոբ Կիրակոսեանի մահուան քառասունքի առթիւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի առաւօտ Սէն Ժերոմի Ս. Սահակ-Մեսրոպ եկեղեցիին մէջ: Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:



◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆





Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue. 17 — PARIS (9e)

### ԽՆՃՈՅՔ

ՍԷՆ ԼՈՒ.— Հ. Յ. Դ. Ակնունի ենթակոմէին ընկերահամակրական խնճոյքը, այս Շաբաթ երեկոյ, տեղւոյս դպրոցին սրահին մէջ:

Գեղարուեստական ճոխ բաժին: Երգ, արտասանութիւն, հայկական պար եւ անակնկալներ:

Մուտքը ազատ է:

ԾԱՆՕԹ.— Նոյն օրը պիտի քաշուի Կապոյտ Խաչի Սէն Լուի գիշերային դպրոցի վիճակահանութեան տոմսերը:

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

### Ս. ՅՈՎՀ. ՄԿՐՏԻՉ ԵԿԵՂԵՑԻ

Պիտի կատարուի հոգեհանգիստ մեր բիւրաւոր նահատակաց յիշատակին համար, այս կիրակի, պիտի մատուցուի հանդիսաւոր քառաձայն Ս. պատարագ:

Պիտի քարոզէ Հայրապետական Պատուիրակ՝ ԳԵՐՇ. ՏԷՐ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ:

Կը հրաւիրուի հասարակութիւնը այս հոգեհանգստեան պաշտամունքին մեծարելու համար յիշատակը մեր հերոսներուն եւ նահատակներուն:

### ՎԱՐԱԳԱՅ Ս. ԽԱՉ

ԿԻՐԱԿԻ. Հոգեհանգստեան պաշտօն գիւղին մէջ երկար տարիներ հանրութեան ծառայած հանգուցեալ բժիշկ Յովհաննէս Արթինեանի յիշատակին:

Կը խնդրուի հանգուցեալին յիշատակը յարգողներէն իրենց ներկայութեամբը յարգել զայն:

### Ս. ԹԱԴԷՈՍ — ՄԱՐՍԷՅԼ

ՆՈՐ ԿԻՐԱԿԻ, տօն համայն նահատակաց, պատարագ ժամը 10ին, քարոզ 11ին եւ հոգեհանգստեան պաշտօն 11.30ին:

### Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՊՈՄՈՆ

ԿԻՐԱԿԻ, կրկնազատիկ, յիշատակ մէկ միլիոն նահատակաց: Պատարագ ժամը 10ին, հոգեհանգիստ 12ին:

### Ս. ԿԱՐԱՊԵՏ – (ԳԱՄՓ. ՖՐԷԶ)

ԿԻՐԱԿԻ, նահատակաց տօն, ժամը 9ին, պատարագ 10ին:

(Կառտանի եկեղեցիին մէջ)

Մասնաւոր հոգեհանգիստ ի յիշատակ Խրիմեան Հայրիկի վախճանման 50րդ տարելիցին առթիւ:

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Տարեց կնոջ մը համար ընտանիքի մը քով փանսիօն: Ենթական 78 տարեկան առողջ եւ բարեկեցիկ է: Դիմել՝ Հ. Աղաբէկեան, 7րիւ Ալֆրէտ Պրիւնօ, Փարիզ (16):

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆



## ԱՊՐԻԼ 11-24Ը

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Սալ Քատէի մէջ, (Նախկին Փըթի – Ժուռնալ)
Հինգշաբթի, Ապրիլ 24, ժամը 21ին
Նախագահութեամբ ԱՊՐԻԼԵԱՆ ՍԵՐՈՒՆԴԻՆ (ՁՈՄ)
Մանրամասնութիւնները յաջորդով:

### Surprise-Party

կազմակերպուած
ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ
կողմէ, կիրակի Ապրիլ 13ին՝
ժամը 14,30էն 24:
BRASSERIE ZIMMER

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

կազմակերպուած Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէի կողմէ:

Տեղի կ'ունենայ այս Շաբաթ, ժամը 21ին, Ֆրանս. Համալսարանի Ամփիթատրոնին մէջ:

Կը նախագահէ ընկեր ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ

Կը խօսի ընկեր Վ. ԻՇԽԱՆԵԱՆ

Նիւթ՝ Հայաստանի ժողովուրդը, մտաւորականութիւնը եւ մենք:

### ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

ՀԱՄԱ. – ԽԱՐԲԵՐԴ. Հայր. Միութեան Կարտանի մասնաճիւղի ընդհ. անդամական ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ, ժամը երեքին Հ. Բ. Ը. Միութեան սրահին մէջ:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՍԱՄՈՒԷԼ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Վարժարանին 1958 – 1959 ուսումնական տարեշրջանի արձանագրութիւնները կը բացուին ապրիլ 15ին եւ կը փակուին Յուն. 15ին: Տեսչութիւնը ջերմօրէն կը խնդրէ որ դիմողները անպայման միասին բերեն իրենց զաւակներուն դպրոցական վկայականը:

COLLÈGE S. MOORAT
26, Rue Troyon, Sèvres Tel. OBS. 18-28

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԼԻԲԱՆԱՆԻ մէջ ծանր միջադէպեր պատահեցան առջի օր. ճէպէլ Տրիպոլիք գինեալ բախումներ ունեցած են Ապահովութեան ուժերուն հետ: Յառաջդիմական ընկերվարական պարագլուխ Ճումպլաթ վերջերս բազմաթիւ զէնքեր ստացած էր Սուրիայէն եւ բաժնած իր հետեւորդներուն. այդ զէնքերուն մեծ մասը գրաւուած է ոստիկանութեան կողմէ: Կռիւներու ընթացքին սպաննուեցաւ երեք հոգի, մէկը՝ ոստիկան: Ձերբակալուած են քանի մը աւելի խռովարարներ: Կարգ մը շրջանակներ հետեւեալ հարցը կու տան. — Յեղափոխութի՞ւն Լիբանանի մէջ:

ԵՐԿՈՒ ՀԱՄԱՑՆԱՎԱՐ պարագլուխներ որ 1951էն ի վեր քաշուած էին Չեխոսլովաքիոյ քաղաքական կեանքէն, նոր մուտք գործած են:

ԲՈԶԱ ԷԼ ԵՈՒՍԷՖ արաբական լրագրութեան ամէնէն ծանօթ դէմքերէն մին, մեռաւ առջի օր: Նախկին զերասանուհի, Բոզանուէֆ1925ին հիմնած էր քաղաքական եւ երգիծական թերթ մը, իր անունով:

ԱՐՏԱՍԱՀՄԱՆ մեկնող ճամբորդները օտար դրամէ զատ (տոլլդ) միայն քսան հազար ֆրանս. ֆրանք կրնան տանիլ իրենց հետ, ինչպէս կը յիշեցնէ ելմտական նախարարութիւնը:

ԱԶԳ. ԱԶՏԱԳՐԱԿԱՆ ճակատի 13 անդամներ առջի օր ձերբակալուեցան Մարսիլիոյ մէջ:

ԽՐՈՒՇՉԵՒ նամակ մը գրած է անգլիացի ուսուցիչի մը: Վարչապետը կը բացատրէ այդ նամակով թէ արեւելքի եւ արեւմուտքի «փոքրիկ մարդը» կրնայ առեւտրական եւ մշակութային կապը վերահաստատել երկու աշխարհներու միջեւ:

ԼԵՀԱՍՏԱՆ նամակով մը բողոքեց Ատլանտեան Ուխտի բոլոր երկիրներուն՝ Գերմանիոյ հիւլէական սպառազինման դէմ, դարձեալ առաջարկելով Ռափացքիի ծրագիրը:

ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ համաձայնագիր մը ստորագրուած է Արաբ Միացեալ Հանրապետութեան եւ Խ. Միութեան միջեւ: Այս ձեւով երկու պետութիւնները գիտուններ, ուսանողներ, եւ շարժանկարի ժապաւէններ պիտի փոխանակեն:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Սէն Ժերմէի Թաղ. Խորհուրդը, Թաղեցիներէն ողբացեալ Գրիգոր Եապուպեանի մահուան առթիւ խորին շնորհակալութեամբ փոխան ծաղկեպսակի ստացած է հետեւեալ նուէրները, ի նպաստ Թաղիս եկեղեցիին:

Տէր եւ Տիկին Յ. Զատիկեանէ երկու հազար ֆրանք, Տէր եւ Տիկին Ս. Մխալեանէ 1500, Տէր եւ Տիկին Ա. Համալեանէ, Տէր եւ Տիկին Յ. Մարգարեանէ, Պ. Մինաս Պօղոսեանէ, Տէր եւ Տիկին Ս. Աւէտեանէ, Ա. Քաչեանէ, Մկրտիչ Լոփոլեանէ, Մահիպշընէ հազարական, Տիկին Նուարդ Անտոնեանէ, Պ. Պօղոսեանէ, Սարգիս Ահարոնեանէ, Կ. Քաչեանէ, Սամուէլեանէ, Ս. Պօղոսեանէ, Ե. Պօքոսեանէ 500ական: Իսկ Այրի Տիկին Սուվալեանէ հազար ֆրանք: Ինչպէս նաեւ Պ. Թումիկեանէ հազար ֆրանք:

## ՆՈՒԷՐՆԵՐ

Շաւիլէն Գարաօղլանեան եւ Աննայեան ընտանիքները հազարական ֆրանք կը նուիրեն, Կապոյտ Խաչի օգափոխութեան կայանին, փոխան ծաղկեպսակի Այրի Տիկին Նուրհանի Գէորգեանի մահուան առթիւ (Քլամառէն):

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կապ. Խաչի Կեդր. վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է, Տրակինեանէն փոքրիկներ Արուսեակ եւ Վարուժան Լօրէնեաններէ հինգ հազար ֆրանք, որոնք իրենց ծննդեան 7րդ տարեդարձին առթիւ, իրենց ծնողաց կողմէ եղած նուէրներէն բաժին մը հանած էին Միութեանս մանուկներու օգափ. կայանին: Կեդր. վարչութիւնս ստացած է իր ժամանակին Լիոնի մասնաճիւղէն 30.000 եւ Մարսէյլի մասնաճիւղէն քսան հազար ֆրանք կայանի շէնքին ի նպաստ:

Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՎԻԷՆ.— Այրի Տիկին Մարի Մուրատեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ադապապ Ծղնաւորեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Յակոբ Գաղոյեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Անդրանիկ Գաբրիէլեան եւ բոլոր պարագաները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն Բարմ. Հայր. Միութեան եւ բոլոր անոնց, որոնք անձամբ, գրաւոր, կամ ծաղկեպսակով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին իրենց տարաբախտ ամուսնոյն, հօր, աներհօր, քեռայրին ՊԵՏՐՈՍ ՄՈՒՐԱՏԵԱՆԻ մահուան առթիւ:

## ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Տէր Եսայի քահանայի ձեռամբ եղած Ալֆորվիլի նուիրատուներու ցանկը:

Պ. Պ. Գ. Տօտաքեան քսան հազար ֆր., Պ. Սուճուքճեան քսան հազար, Յ. Սահակեան հինգ հազար, Ն. Նոտարեան 5 հազար, Տիկին Տէր-Վարդանեան երկու հազար, Տիկ. Սէօլէզեան երկու հազար, Պ. Պ. Յ. Սիմոնեան 1500, Փ. Անդրանիկեան, Յ. Ավշանեան, Յ. Մէսէլեան, Բ. Բարթողեան, Մ. Յովակիմեան, Փ. Նէտելեան, Տիկին Մ. Մութաֆեան, Տիկ. Ն. Պէրպէրեան, Պ. Պ. Կ. Յակոբճան, Գ. Ֆէրմանեան, Գ. Քոստիկեան, Տ. Սուքիասեան, Մ. Գարասալմասեան, Ե. Տօնիկեան, Ա. Գույումճեան, Վ. Կակոյեան, Գ. Զէրչեան, Ղ. Իշխանեան, Մ. Պետրոսեան, Յ. Սէրէճեան, Տիկին Մ. Բապուճեան, Տիկին Մ. Փանոսեան, Պ. Պ. Մ. Տօնիկեան, Ո. Սիմսարեան, Յ. Էնայէթեան, Թ. Պէտիկեան հազարական ֆր:

Պ. Պ. Ս. Կէյվէլեան, Բ. Աւետիքեան, Բ. Զօպաեան, Տիկին Տէր Աբէլեան, Տիկ. Ա. Խուրպէլէկեան, Պ. Ե. Պէրպէրեան, Ոմն, Հաճի Միհրան Սանթուրեան, Պ. Յ. Նիկողոսեան, Պ. Զ. Քոչեան, Ոմն, Հ. Միքայէլեան, Տիկին Վ. Խաթուն Նէտէյեան 500ական ֆրանք:

Պ. Գ. Պասմաճեան չորս հարիւր:

Պ. Կ. Փափազեան, Պ. Կ. Մուրատեան, Տիկին Լ. Պօղոսեան 300ական ֆրանք:

Իսկ լէ Մուլինոյի նուիրատուներու ցանկը.—

Պ. Պ. Յ. Գռճապլիքեան, Կ. Միսաքեան, Ս. Միսաքեան, Գ. Ապօտնաեան, Օ. Քէշիշեան, Կ. Հաճի Դանիէլեան հինգ հազարական ֆրանք:

Զ. Տէյիրմէնճեան, Մ. Պէյլէրեան չորս հազարական:

Յ. Գրիգորեան երեք հազար:

Գ. Զամասանեան, Գ. Սէմէրճեան, Մ. Ղուկասեան, Թ. Գալիկեան, Յ. Համբարեան երկու հազարական:

Յ. Գարակէօզեան 1500:

Պ. Գէորգեան, Յ. Մաթէնեան, Յ. Ղազարեան, Ե. Ատաշեան, Ն. Քէլէշեան, Օ. Կիրակոսեան, Կ. Գարակէօզեան, Տիկին Ս. Զատիկեան, Տիկ. Մ. Յովհաննէսեան հազարական ֆրանք:

Տիկին Է. Թէլլեան, Պ. Գ. Վարդերեան, Յ. Բարատեան 500ական ֆրանք:





## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Թիֆլիզէն Վարսենիկ Մարգարեան Ցակոբի, կը փնտռէ Ֆրանսարնակ իր զաւակները, Նորայր Մարգարեան (Լիոն կը կարծուի ըլլալ), Գայեանէ, Իսկուհի եւ Մարիամ Մարգարեաններ, որոնք Մարսէյլ ըլլալ կը կարծուին: Իրենց հօրը անունը Սեպուհ: Կը խնդրուի տեղեկացնել Յ. Ժամկոչեանի 156 րիւ տը Շաթու, Քոլոմպ, Սէն:

×

Հայաստանի Ներքին Ախտայի Բգնի գիւղէն Սարգիս Անտոնեանը կը փնտռէ իր զաւակը ՀՐԱՅՐ ԱՆՏՈՆԵԱՆը, Բ. աշխարհամարտին գերի ինկած Գերմաններու քով: 1945ի սկիզբը կը գտնուէր Վիէննա հիւանդանոցի մէջ: Տեղեկութիւն ունեցողներէն Թախանձագին կը խնդրուի յայտնել Ս. Յակոբեանի, 2 րիւ Քոնտորսէ, Քաշան (Սէն), Ֆրանս:

Ամերիկահայ թերթերէն կը խնդրուի արտատպել:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Երիտասարդ զոյգի մը համար կը փնտռուի երկու սենեակ, խոհանոց, ի հարկին բըփիզով: Դիմել Պ. Վ. Խաչատուրեան,

18, rue de la Campagne, Sevran, S. et O,

կամ հեռաձայնել Դաւիթեանի, 926-52-94

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԿԱԶԱՅԻ մէջ երեւան ելած է հականաստրեան շարժում մը. ձերբակալուած են կարգ մը անձեր՝ Թռուցիկներ ցրուելու ատեն :

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ Վարչապետ Ատընաուըր եւ Արտաքին Նախարար Ֆոն Պրենթանօ չորեքշաբթի Լոնտոն պիտի երթան, կարեւոր խօսակցութիւններ ունենալու համար Վարչապետ Մաքմիլընի հետ :

ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ ջրածին ռումբի փորձերը շուտով պիտի սկսին Խաղաղական ովկիանոսին մէջ. մէկ միլիոն քառ. քիլոմեթրի տարածութիւն մը արգիլուած գօտի հռչակուած է :

ՓՐԱԿԱՅԻ Լեհաստան – Չեխոսլովաքիա – Արեւելեան Գերմանիա ժողովը վերջացաւ. երեք երկիրները որոշեցին դարձեալ ուժ տալ Ռափացքիի ծրագիրին եւ զօրավիգ կանգնիլ՝ պահանջելով անոր գործադրութիւնը :

ԻՏԱԼԻՈՅ երեսփոխանական ընտրութեանց 596 աթոռի համար արձանագրըուած են վեց հազար թեկնածուներ, ներկայացած՝ 315 ցանկերով : Ծերակոյտի 246 աթոռներուն համար 2500 թեկնածու կայ :

ՊԱՐՍԵԼՈՆԱՅԻ մէջ բազմաթիւ նոր ձերբակալութիւններ եղան գործադուլէն վերջ. ոստիկանութիւնը յաջողեցաւ երեւան հանել գաղտնի կազմակերպութիւններ :

ՔՈՒՊԱՅԻ մէջ առջի օր խաղաղութիւնը վերահաստատուած էր, բայց կը կարծուի թէ ըմբոստները դարձեալ պիտի խլրտին :

ՅԱԿՈԲ ԳՈՒՆՐՈՒԵԱՆ անուն հայ առեւտրական մը, 36 տարեկան, յարձակման ենթարկուած է Մարսիլիոյ մէջ, երբ իր խանութը կը փակէր : Ծանրապէս վիրաւորուած, փոխադրուած է հիւանդանոց : «Ֆիկարօ» կը գրէ թէ զոհը ճանչցուած էր իբրեւ պարկեշտ առեւտրական մը : Մարդասպանները չեն գըտնուած :

ՎԱՐՍԱՅԱՐԴԱՐՈՒԹԵԱՆ Ֆրանսայի ախոյենութեան ընդհանուր դասաւորման մէջ, Բ. տեղը գրաւած է Ժագ Պալճեան, որ արժանացած է նաեւ երեք ուրիշ մրցանակներու, մասնագիտական վարսայարդարութեան զանազան բաժիններու մէջ :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ԹԷՅԱՍԵՂԱՆ

Վիէնի Կապ. Խաչի վարչութիւնը թէյասեղան մը կազմակերպած է, այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին Համօ Օհանջանեանի սրահին մէջ : Կը հրաւիրուին բոլոր ընկեր – ընկերուհիները անխտիր :

Ներկայ կ'ըլլայ Տիկին Տ. Սէրէնկիւլեան :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական հաւաքոյթը այս չորեքշարթի իրիկուն Քաղէի սրճարանի վերնայարկը :

Կը խօսի Պ. ՄԵՍՐՈՊ ՊԱԼԱԵԱՆ :

(Ուսանող՝ Սորպոնի մանկավարժութեան եւ գրականութեան ճիւղին) :

Նիւթն է՝ «Նոր Պարսկաստանը եւ պարսկահայ գաղութը» :

Մուտքը ազատ է :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Հայաստանէն նամակ ունին՝ Արէթ Մինաս Զլկաթեան : Նաթայէլ եւ Մաքրուհի Ներկարարեան : Միսակ Պաղպիւտարեան : Հայկազ Արզումանեան : Վարդան, Մկրտիչ, Իսրայէլ Ղարիպեան : Վահէ եւ Բագարատ Տէմիրճեան : Միհրդատ Զալեան : Արտաւազդ Մինասեան : Զաւէն Տատուրեան : Լեւոն Ալանեան : Մանուկ Կոչո(եան) : Հրաչիկ Փէհլիվանեան : Թագուհի Խաչատուրեան կը փնտռէ եղբայրը Սողոմոն : Դիմել եկեղեցին :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ Օգն. Մարմնի Ֆէսանվիլիէի օգաի. կայանին կը նուիրեն.— Պ. Պ. Գրիգոր Եղիաեան, Մանուկեան (Քլամառէն) հազարական Ֆր. :

× Հայ Կարմիր Խաչի Օգն. մարմնի Փարիզի դարմանատան կը նուիրեն. — Պ. Պ. Բալուեան հազար Ֆր., Տարքանեան հինգ հարիւր Ֆրանք :

Օր. ԱՆԱՀԻՏ ՃԻԶՄԷՃԵԱՆ
Պ. ՍԵՊՈՒՀ ԹԱՇՃԵԱՆ
Նշանուած

6, Ապրիլ 1958

Կնքահայրութեամբ Տէր եւ Տիկին Ֆագրիկեանի (Փարիզ) :

×

Այս ուրախ առթիւ Տէր եւ Տիկին Ճիզմէճեան երկու հազար Ֆր. կը նուիրեն «Յառաջ»ի բարգաւաճման :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՇՔԵՂ ՀԱՆԴԷՍ-ՑԵՐԵԿՈՅԹ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպութեամբ

Նորակազմ « Հայ Մշակութային Միութեան » :

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Սալ Ռամօ, Րիւ Հիփօլիթ Ֆլանտրէն :

Երգ, պար, արտասանութիւն, հայկական նուագ :

#### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Բեմադրութեամբ՝ Պ. ՄԱՐԹԷՆ ՕՖԼԱԶԻ, իրենց մասնակցութիւնը կը բերեն միութեան անդամները :

Պիտի ներկայացուի նաեւ «ԱՆՈՒՇ» օփէրէթէն պատկեր մը :

Մութաֆէլեանի խումբը հայկական, կովկասեան պարերով :

Հանդէսին գեղարուեստական բաժնին կը մասնակցին Լիոնի հայկական վարժ. աշակերտութիւնը, ղեկավարութեամբ ուսուցչուհի Օր. Ընծայ Ստեփանեանի : Նոյնպէս Վիէնի Յովսէփ վրդ. Լեւոնեան իր երգչախումբով :

Պիտի երգէ հայերէն հատընտիր կըտորներ :

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Թիֆլիզէն Վարսենիկ Մարգարեան Յակոբի, կը փնտռէ Ֆրանսաբնակ իր ազգականները, Նորայր Մարգարեան (Լիոն կը կարծուի ըլլալ), Գայեանէ, Իսկուհի եւ Մարիձա Մարգարեաններ, որոնք Մարսէյլ ըլլալ կը կարծուին : Իրենց հօրը անունը Սեպուհ : Կը խնդրուի տեղեկացնել Յ. Ժամկոչեանի 156 բիւ տը Շաթու, Քոլոմպ, Սէն :

×

Հայաստանի ներքին Ախտայի Բզնի գիւղէն Սարգիս Անտոնեանը կը փնտռէ իր զաւակը ՀՐԱՅՐ ԱՆՏՈՆԵԱՆը, Բ. աշխարհամարտին գերի ինկած Գերմաններու քով : 1945ի սկիզբը կը գտնուէր Վիէննա հիւանդանոցի մէջ : Տեղեկութիւն ունեցողներէն թախանձագին կը խնդրուի յայտնել Ս. Յակոբեանի, 2 բիւ Քոնտորսէ, Քաշան (Սէն), Ֆրանս :

Ամերիկահայ թերթերէն կը խնդրուի արտատպել :





◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆




Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)


### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, «Համօ Օհանջանեան» ակումբին մէջ : Կարեւոր օրակարգ : Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Քրիստափոր խումբի ժողովը այսօր, ժամը 21ին, Քաֆէ Րէժանի մէջ : Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է :

ՓԱՐԻԶ.— Կապ. Խաչի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 3.30ին, Քաֆէ Րէժանի մէջ : Բոլորին ներկայութիւնը անհրաժեշտ է : Ներկաներու թիւը բաւարար պիտի նկատուի : Օրակարգ.— Մայիս չորսի թէյասեղանին կարգադրութիւնները : Նոր վարչութեան ընտրութիւն :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ «Դրօ», «Յառաջ» եւ «Շ. Միսաքեան» խումբերը այս չորեքշաբթի ժամը 21ին :

ՔՐԻՍՏԱՓՈՐ ենթակոմիտէն այս կիրակի ժամը 15ին :

Պարտաւորիչ ներկայութիւն :

Սոյն ժողովները տեղի կ'ունենան Ահարոնեան ակումբին մէջ : Ներկայ կ'ըլլան Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը եւ ընկ. Վ. Իշխանեան :

## ԱՊՐԻԼ 11-24Ը

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Սալ Քատէի մէջ, (Նախկին Փըթի – Ժուրնալ)

Հինգշաբթի, Ապրիլ 24, ժամը 21ին

Նախաձեռնութեամբ ԱՊՐԻԼԵԱՆ ՍԵՐՈՒՆԴԻՆ (ԶՈՄ)

Մանրամասնութիւնները յաջորդով :

### Ֆ. Կ. ԽԱՉԻ ԱՆԿԷՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

## ՏԱՐԵԿԱՆ ՋԵՌՆԱՐԿԸ

Մասնակցութեամբ Նոր Սերունդի Առնուվիլի «ԿԱՌՎԱՐԵՆՑ» ԽՈՒՄԲԻՆ

Ապրիլ 20ին, ժամը 16էն, կէս գիշեր, Անկէնի քաղաքապետարանի սրահին մէջ

30, RUE DE LA LIBÉRATION

Բանախօսութիւն, գեղարուեստական բաժին եւ պար,

ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ՝ PIZZARO

Ճոխ պիւֆէ :

խորհրդային տարկուԹիւնները: Մինչեւ իսկ գոհունակուԹիւն յայտնեցին, որ հարցը դրուած է ԱպահովուԹեան Խոր– հուրդին առջեւ, ուր ի յայտ պիտի գայ Խ. ՄիուԹեան չարամտուԹիւնը :

Միացեալ Նահանգներու օգտաորմիզը յարձակողական ոչ մէկ նպատակ ունի, կ'ըսէ Արտաքին նախարարուԹիւնը եւ Կոմիքոյի մեղադրանքները ոչ մէկ փաստ կրնան ունենալ այս ուղղու– Թեամբ :

ՄԱԿ.— ԵրկուշաբԹի կէսօրէ ետք Ա– պահովուԹեան Խորհուրդը պիտի գու– մարուի քննելու համար Խ. ՄիուԹեան բողոքը՝ Միացեալ Նահանգներու դէմ :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԺԱՆ ԿԻՆՑԸՊԷՐ ծանօԹ լրագրող, մասնաւորաբար ձայնասփիւռի, մեռաւ ՇաբաԹ առտու: Խմբագիր էր Լիպերա– սիոնի եւ քաջ ծանօԹ քաղաքական հար– ցերու :

ԶՕՐ. ԿԱՄԸԼԷՆ մեռաւ առջի գիշեր Վալ տը Կրասի հիւանդանոցը: 86 տարե– կան էր եւ երկար ատենէ ի վեր անդա– մալոյծ: Զօրավար՝ 1916ին, 1925 – 26ին ծառայած է Արեւելք (Ճեպել Տրուզ) : Ընդհանուր հրամանատար 1939ին, պաշտ– տօնազուրկ եղաւ 1940 Մայիս 18ին: Ձեր– բակալուած Գերմանացիներուն կողմէ, ազատագրուեցաւ 1945ին ամերիկեան բանակին կողմէ: Իր յուշերը կը գրէր:

ԴԱՆԻՈՅ մէջ կառավարական տագնապ մը ծայր տուաւ. Ֆոն Ֆինոի դահլիճը տապալեցաւ :

ՄՈՍԿՈՒԱՅԻ Կոմունիստ ԹերԹը խստ– օրէն քննադատեց Եուկոսլաւիոյ համայ– նավարներու ծրագիրը, Պելկրատ տակա– ւին չպատասխանեց այս քննադատու– Թեանց, բայց բարձրաստիճան շրջանակ– ները մեծ կարեւորուԹիւն կ'ընծայեն ա– նոնց: Կը կարծուի Թէ նոր կռիւ մը ծայր պիտի տայ Մոսկուայի եւ Պելկրատի մի– ջեւ :

ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻՈՅ նախկին փաչական– ներու դատավարուԹիւնը վերջացաւ. չորս հոգի մահուան դատապարտուեցաւ. 11 հոգի՝ 14–25 տարուան բանտարկուԹեան:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Մէզօն – ԼաֆիԹէն Ա. Ք. հազար ֆր. կը նուիրէ: (Ստանալ «Յառաջ»էն:

Պ. Արամ Զիլինկիրեան, Տէր եւ Տիկին Անժէլ Սրապեան (Ամերիկա), Տէր եւ Տիկին Թորգոմ ՄուԹաֆեան, զաւակները եւ Թոռները (Պոլիս), Այրի Տիկին Մու– Թաֆեան, զաւակները եւ Թոռները (Պո– լիս), Տէր եւ Տիկին Համամճեան եւ զա– ւակները (Պոլիս), Տէր եւ Տիկին Վահէ Պէշիրեան, զաւակը եւ Թոռը, Տէր եւ Տիկին Լեւոն Պէշիրեան եւ աղջիկը, Տէր եւ Տիկին Ալիս Պայեան էրկիւտէն եւ զաւակները (Պոլիս), Տէր եւ Տիկին Սուր– եան, զաւակները եւ Թոռները, Տէր եւ Տիկին Կարպիս Պետրոսեան եւ զաւակնե– րը եւ Թոռները, Տէր եւ Տիկ. Վազգէնակ ԱլԹունեան, ինչպէս նաեւ բոլոր պարա– գաները սրտի խորունկ կսկիծով կը ծա– նուցանեն իրենց եղբօր, քրոջորդւոյն, զարմիկին եւ բարեկամին

ՆՇԱՆ ԶԻԼԻՆԿԻՐԵԱՆԻ

մահը՝ որ տեղի ունեցաւ 15 Ապրիլ ժամը 10ին, Շալօն սիւր Սօնի հիւանդանոցին մէջ, 57 տարեկանին:

ՅուղարկաւորուԹիւնը պիտի կատար– ուի այս երկուշաբԹի ժամը 14ին, Փարի– զի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Քոլոմպի նոր գերեզմանատունը :

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել :

### ԾԱԽՈՒ Է

Ազատ տնակ մը (փավիյօն), ներքնա– յարկի վրայ, 3 սենեակ, խոհանոց, ջուր, կազ, ելեկտրականուԹիւն, կոյուղի (թու թ'ա լ'էկու), ներքնայարկ (սու – սօլ), ջրցան (տուշ), մեծ աշխատանոց մը բա– կին վրայ ազակեպատ: Պզտիկ պարտէզ մը առջեւը եւ կողքին, կայարանի մօտ, (ԻՍԻ – էնվալիտի գիծէն գետին ձախ ափը), օԹօպիւս 123 եւ 190 (կա– յարան Իսի), Իսիի մեԹրոյէն 10 վայր– կեան ոտքով : Դիմել՝

40, Bld Rodin, Issy-les-Monlineaux, Seine

# ԱՊՐԻԼ 11-24Ը

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Սալ Քատէի մէջ, (Նախկին ՓըԹի – Ժուրնալ) 21, RUE CADET

Հինգշաբթի, Ապրիլ 24, ժամը 21ին

ՆախաձեռնուԹեամբ ԱՊՐԻԼԵԱՆ ՍԵՐՈՒՆԴԻՆ (ԶՈՄ)

Կը նախագահէ՝ Պ. ԱՐՇԱԻՐ ԽԱՆԷՏԱՆԵԱՆ

Կը խօսին Կ. ՓՕԼԱՏԵԱՆ եւ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Իրենց մասնակցուԹիւնը կը բերեն Օր. Շաքէ Պէնկեան (երգ), Օր. Օր ժիւլիէթ Աւետիսեան եւ Շաքէ Յովհաննէսեան (արտասանուԹիւն), ժագ Քասթանիէ, Պ. Պուսէ, Սոնիա Գաբրիէլեան (երբեակ):

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

Ալֆորվիլէն՝ օԹօքար, արձանագրուիլ Ֆիլիփի սրճարանը: Կը մեկնի ժամը 20.30ին Պուլ. Քարնոյէն:

ԻՍԻէն ժամը 20ին Ջամիկեանի սրճարանէն :

## ԱՊՐԻԼ 11-24Ի ՅԻՇԱՏԱԿԸ

### ՓԱՐԻԶ

Կիրակի (Ապրիլ 27), ժամը 17ին,

SACRÉ-CŒURի

եկեղեցիին մէջ:

Հոգեհանգստեան պատարագ Ապրիլեան Համազգային արհաւիրքին նահատակնե– րուն յիշատակին :

### ԼԻՈՆ

Հոգեհանգստեան պատարագ, Կիրակի ժամը 11ին, Լիոնի եկեղեցիին մէջ, 69 Րիւ Լուի Պլան :

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

ՆախաձեռնուԹեամբ Ֆրանս. Բանակի Հայ ԹազմիկներուՄիուԹեան եւ մաս– նակցուԹեամբ տասներկու կազմակեր– պուԹեանց եւ միուԹիւններու :

27 Ապրիլ, Կիրակի կէսօրէ ետք ժամը 2.30ին, Հ. Յ. Դ. Տան մէջ:

Կը նախագահէ՝ Պ. ԱԶԳԻՆ ՄԱՐՏԻ– ՐՈՍԵԱՆ :

Կը բանախօսէ՝ Վ. ԻՇԽԱՆԵԱՆ

Գեղարուեստական պատշաճ բաժին :

ՄանրամասնուԹիւնները տեղւոյն վրայ: Առաւօտեան պիտի մատուցուի հոգե– հանգստեան պաշտօն յետ պատարագի՝ Ապրիլեան զոհերուն համար :

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍԳԱՏՕՆ

Կազմակերպուած Վալանսի Հայ Ազգ. ՄիուԹեան կողմէ :

Տեղի կ'ունենայ ԹէաԹր – Մունիսի– բալի մէջ, ՇաբաԹ երեկոյ ժամը 9ին :

Կը խօսի մկրապատուելի Ա. ՊԱԳԱԼԵԱՆ (Մարսէյլէն) :

Խօսք կ'առնեն Սահակ Աւագ քահանայ Պապիկեան, Գեր. Գրիգոր Վարդապետ Պապեան :

## ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Լիոնի Հայ ԿաԹողիկէ ժողովրդապե– տուԹիւնը սիրով կը հրաւիրէ Լիոնի եւ շրջակայի հայ գաղուԹը Ապրիլեան Նա– հատակներու յիշատակը վերակոչելու համար մատուցուելիք պատարագին ու հոգեհանգստեան պաշտօնին, որ տեղի պիտի ունենայ Ֆուրվիէրի Տիրամօր տաճարին մէջ, Կիրակի 27 Ապրիլ, ժամը ճիշդ 10ին, Արհ. Գոլէնի՝ արե– ւելածէս հասարակուԹիւններու եպիսկո– պոսին նախագահուԹեան տակ :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Ֆ. Կ. Խաչի քաղաքի մասնաճիւղի ընդհ. ժողովը ապրիլ 23ին, ՉորեքշաբԹի կէսօրէ վերջ ժամը 3ին, Ահարոնեան ակումբի մէջ: Կարեւոր օրա– կարգ: Բոլոր ընկերուհիներու ներկայու– Թիւնը անհրաժեշտ է :



Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

# ԱՊՐԻԼ 11-24Ը

## ԱՊՐԻԼ 11-24Ի ՅԻՇԱՏԱԿԸ

### ՓԱՐԻԶ

Կիրակի (Ապրիլ 27), ժամը 17ին,

**SACRÉ-CŒURի**

եկեղեցիին մէջ:

Հոգեհանգստեան պատարագ Ապրիլեան Համազգային արհաւիրքին նահատակներուն յիշատակին:

### ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍԳԱՏՕՆ

Կազմակերպուած Վալանսի Հայ Ազգ. Միութեան կողմէ:

Տեղի կ'ունենայ Թէաթր – Մինիսիպալի մէջ, Շաբաթ երեկոյ ժամը 9ին:

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Մէթրօ Փորթ Մայեօ կամ Շամփէրէ

Այս Կիրակի ժամը 15.30ին մասնաւոր պաշտամունք, ի յիշատակ 1915 – 18ի ընդհ. նահատակաց: Մասնակցութեամբ ջութակահար Պ. Արամ Թաճիրեանի:

### ՊՈՒՏՈՅԻ ՄԷՋ

Այս կիրակի ժամը 15.30ին, Կղերականներու սրահը, 22 րիւ տէ Պախիւթիէ: Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Պորտոյի Մուրատ խումբի:

Մուտքը ազատ է:

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:

### ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Լիոնի Հայ Կաթողիկէ ժողովրդապետութիւնը սիրով կը հրաւիրէ Լիոնի եւ շրջակայի հայ գաղութը Ապրիլեան Նահատակներու յիշատակը վերակոչելու համար մատուցուելիք պատարագին ու հոգեհանգստեան պաշտօնին, որ տեղի պիտի ունենայ Ֆուրվիէրի Տիրամօր տաճարին մէջ, Կիրակի 27 Ապրիլ, ժամը ճիշդ 10ին, Արհ. Գոլլէնի՝ արեւելածէս հասարակութիւններու եպիսկոպոսին նախագահութեան տակ:

### ԱՊՐԻԼԵԱՆ ՍԳԱՏՕՆ

Փոն տը Շէրիի եւ Շրջակայքի Հայ Ազգային Միութեան նախաձեռնութեամբ եւ մասնակցութեամբ Աւետարանական եւ Սթանոզի Հայր. Միութեան, տեղի պիտի ունենայ Ապրիլ 27ին, Գաթպլասն Պ. Պապիկեանի սրահը:

### ԼԻՈՆ

Կազմակերպուած Ազգ. Միութեան Կեդր. վարչութեան կողմէ, հովանաւորութեամբ երեք յարանուանութեանց պետերուն եւ մասնակցութեամբ Լիոնահայ գաղութին, այս Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Պուրս տիւ Թրավայի սրահը (Փլաս Կիշառ):

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Ֆրանս. Բանակի Հայ Ռազմիկներու Միութեան եւ մասնակցութեամբ տասներկու կազմակերպութեանց եւ միութիւններու:

27 Ապրիլ, Կիրակի կէսօրէ ետք ժամը 2.30ին, Հ. Յ. Դ. Տան մէջ:

Կը նախագահէ՝ Պ. ԱԶԳԻՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ:

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հայ Ազգ. Միութեան եւ Մասնակցութեամբ տեղական բոլոր Ազգ. կազմակերպութիւններու, Հայր. Միութիւններու եւ Ցարանուանութեանց: Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը երեքին, Սէրքըլ Կաթոլիկի սրահը:

### ԿԱՐՏԱՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Վարանդեան խումբին, այս Կիրակի ժամը 15ին Պիվէռի «Գեղունի» սրահը: Կը խօսին ընկերներ ԿԱՐՕ ԳԷՈՐԳԵԱՆ եւ ԺԻՐԱՅՐ ՄԻՐԻՃԵԱՆ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ազրիւր – Սերոբ Մ. Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ, ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբի ժողովը այս Կիրակի առաւօտ ժամը 9ին, ընկեր Մանուկի բնակարանը: Կարեւոր օրակարգ:

ԿՐԸՆՈՊԼ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան կոմիտէին ընկերական ընդհ. ժողովը այս երեքշաբթի ժամը 8.30ին, ակումբին մէջ: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը անհրաժեշտ է: Ներկայ կ'ըլլայ ընկեր Վ. Իշխանեան:

ՄԱՐՍԷՅԼ.— Ամասիոյ Հայր. Միութեան տարեկան ընդհ. ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Պար Թապա Միրամար (135 Քորնիշ) սրահին մէջ, Ռէզէրվի մօտ: Ժողովէն վերջ խնջոյք, հաճելի ժամանցով:

Imprimé sur les presses du journal HARATCH
17. Rue Bleue. 17 — PARIS (9e)



Օր. ՍԻԼՎԱ ՉԻԼԻՆԿԻՐԵԱՆ
Պ. ԱՐԱ ՍԵՐՈԲԵԱՆ
Ամուսնացած

Կնքահայրութեամբ Տէր եւ Տիկին Քաջունի Դաւիթեանի:

19, Ապրիլ 1958, Փարիզ

×

Այս ուրախ առթիւ Այրի Տիկին Հոփսիմէ Չիլինկիրեան երկու հազար ֆրանք կը նուիրէ եկեղեցւոյ Կրթ. մարմնին եւ հազար ֆրանք «Յառաջ»ի բարգաւաճման:

### ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԴԱՇՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆԸ

Կազմակերպուած «Ահարոնեան» խումբին կողմէ Մայիս մէկին դէպի Օգուստլա Ֆեռիէր:

Կը հրաւիրուին Փարիզի եւ շրջանի բոլոր փափաքողները: Ժամադրավայր՝ Կառ տը լ'Էսթ ժամը 9ին:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Վարդաշ Ս. Խաչ եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը (Առնուվիլ) կը յայտարարէ թէ այս Կիրակի, 1915 – 1922ի նահատակներուն յիշատակին եկեղեցւոյս մէջ կը կատարուի յաւարտ պատարագի հանդիսաւոր հոգեհանգստեան պաշտօն, կը պատարագէ Առաջնորդ Գերշ. Սերովբէ Եպիսկ. Մանուկեան եւ այդ առթիւ ալ կը քարոզէ:

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Այս Երկուշաբթի իրիկուն: Կը խօսի ընկ. Վ. ԻՇԽԱՆԵԱՆ:

Մանրամասնութիւնները տեղւոյն վըրայ:

### ԽՆՋՈՅՔ

Թոքատի Հայր. Միութեան տարեկան խնջոյքը Կիրակի (27 Ապրիլ), կէսօրէ վերջ ժամը 3ին, Իսիի Խրիմեան դպրոցի սրահը: Նախագահութեամբ Պ. Հանտալեանի:

Կը խօսի Պ. Սահակ Յովհաննէսեան:

ՍԻՓԱՆ–ԿՈՄԻՏԱՍ երգչախումբի վարչութիւնը կը յայտարարէ թէ իր տարեկան համերգը որ տեղի պիտի ունենար Մայիս 11ին՝

### ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է

Ձախաչաձեւելու համար Կարմիր Խաչի հանդէսը:

### ԽՆՋՈՅՔ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կազմակերպուած՝ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Սէն Լուի Սիամանթօ խումբին կողմէ:

Այս Կիրակի, ժամը 9ին դպրոցի սրահին մէջ:

Կը հրաւիրուին շրջանի քոյր կազմակերպութիւնները:

Մուտքը ազատ է

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Բժ. Յակոբ Սիվրիհիսարլեանի մահուան առթիւ Տօնէլեան ընտանիքը (Պանթէօ) կը նուիրէ հազար ֆր. «Յառաջ»ին, հազար ֆր. Կարմիր Խաչին եւ հազար ֆրանք Մշակոյթի Տան: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՎԻԷՆ.— Ֆ. Կ. Խաչի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Խօքսիւզեանէ 1500 ֆր. իրենց թոռնիկին ծննդեան առթիւ:

×

Կապոյտ Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղը՝ օղափոխութեան կայանին ի նպաստ՝ շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.— Այրի Տիկին Հանըմիկ Պետրոսեանէ՝ իր հանգուցեալ ամուսնոյն Տիգրանի մահուան ութերորդ տարելիցին առթիւ երկու հազար ֆր., Պ. Անանիկ Անանիկեանէ օթոյի ծանր արկածէ ազատած ըլլալուն առթիւ հինգ հազար ֆր.:

×

ԼԻՈՆԻ Ազք. Տիկնանց Միութիւնը Ս. Զատկի առթիւ 25 հազար ֆրանքի գումարը շնորհակալութեամբ ստացած է Պ. Ճ. Պահատուրեանէ աղքատներու բաժնելու համար:

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

Կապոյտ Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղը կը կազմակերպէ՝ Գոյամարտ Յուշ երեկոյ մը, Պ. Կակոյեանի սրահը՝ Րիւ էթիէն Տոլէ, 3 Մայիս, Շաբաթ երեկոյ ժամը 8·30էն 12:

Նախագահ՝ Տիկ. ԷԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

Բանախօս՝ Պ. ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ

Նիւթ՝ Վասպուրականի գոյամարտը:

Խօսք կը տրուի փափաքողներու: Երգ, արտասանութիւն:

Կը հրաւիրուին հայրենակիցները:

Մուտքը ազատ է:

ԾԱՆՕԹ.— Մէթրօ Էքօլ Շարանթոնէն հանրակառք 103, իջնել Փլաս Ժան Կուժօն, Փըթի Փօն:

## ՍԱՄՈՒԷԼ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Վարժարանին 1958–1959 ուսումնական տարեշրջանի արձանագրութիւնները կը բացուին ապրիլ 15ին եւ կը փակուին Յուն. 15ին: Տնօրէնութիւնը ջերմօրէն կը խնդրէ որ դիմողները անպայման միասին բերեն իրենց դաւակներուն դպրոցական ՎԿԱՅԱԿԱՆԸ:

COLLÈGE S. MOORAT

26, Rue Troyon, Sèvres Tel. OBS. 18-28

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Յառաջիկայ հաւաքոյթը այս Չորեքշաբթի ժամը 21ին Քաւէ սրճարանի վերնայարկը: Կը խօսի Պ. Վ. ՁԷՅԹՈՒՆՑԵԱՆ, նիւթն է՝ Գալիք իրաւակարգին տակ հայ կուսակցութիւններու ապագան:



Imprimé sur les presses du journal HARATCH

17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան կոմիտէին ընկերական ընդհ. ժողովը այս երեքշաբթի ժամը 8·30ին, դպրոցին մէջ: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը անհրաժեշտ է:

Ֆ. Կ. ԽԱՉԻ Մարսէյլ քաղաքի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Չորեքշաբթի կէսօրէ վերջ ժամը երեքին, Ահարոնեան ակումբին մէջ: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերուհիներուն ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՍԵԲԱՍՏԻՈՅ Նահանգ. Մուրատ Ուսումնասիրաց Միութեան ժողովը Կիրակի, 4 Մայիս կէսօրէ վերջ ժամը 4·30ին, Իսիի Խրիմեան վարժարանին սրահը: Խիստ կարեւոր օրակարգ: Կը խնդրուի բոլոր հայրենակիցներէն եւ համակիրներէն անպայման ներկայ գտնուիլ:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Ուսանող զոյգ մը քաղաքին մէջ սենեակ կը փնտռէ, խոհանոցի դիւրութեամբ: Դիմել «Յառաջ»ի վարչութեան:



## ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԴԱՇՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆԸ

———o———

Կազմակերպուած «Ահարոնեան» խումբին կողմէ Մայիս մէկին դէպի Օզուառլա Ֆեռիէր:

Կը հրաւիրուին Փարիզի եւ շրջանի բոլոր փափաքողները: Ժամադրավայր՝ Կառտը լ'Էսթ ժամը 9ին:

ԼԻՈՆԻ եւ շրջաններու Ազգ. Միութիւնը կը հրաւիրէ հաւատացեալ հայ ժողովուրդը Մայիս չորսի կիրակի օրը ներկայ ըլլալ Լուի Պլան եկեղեցին: Պիտի պատարագէ եւ քարոզէ Հայրապետական պատուիրակ Տ. Սերովբէ եպիսկ. Մանուկեան:

Նոյն օրը Սրբազան հայրը կիտասարկաւագութեան աստիճան պիտի տայ Պ. Յակոբ Թէրզեանի:

